## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## СОДЕРЖАНИЕ




**Խմբագրության հասցեն— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։***

**Адрес редакции**—Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.



Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

**№ 16**

**ՕԳՈՍՏՈՍ**

**1963**

ՀԿՊ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

*Լույս է տեսնում ամիսը երկու անգամ*


ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՎԵՐԱԾՆՄԱՆ ԵՎ ՊՐՈԳՐԵՍԻ ՃԱՆԱՊԱՐՀՈՎ

*Սովետական Միության կոմունիստական պարտիան ազգային-ազատագրական շարժումը դիտել է և դիտում է որպես համաշխարհային ռևոլյուցիոն պրոցեսի բաղկացուցիչ մասը, որպես իմպերիալիզմի դեմ հանդես եկող հզոր ուժ։ Հոկտեմբերյան սոցիալիստական ռևոլյուցիան բացեց ճնշված ժողովուրդների ազատագրման դարաշրջանը։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի գոյացումը բարենպաստ պայմաններ ստեղծեց ազատագրական շարժման հետագա վերելքի և գաղութային սիստեմի վերացման համար։ Սոցիալիզմի վերածումը համաշխարհային զարգացման որոշիչ գործոնի, ազատագրվող ժողովուրդներին հնարավորություն տվեց թևակոխելու իրենց պայքարի նոր, ավելի բարձր փուլը։* «Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ամրապնդումից է հսկայական չափով կախված ռևոլյուցիոն շարժման բոլոր մյուս խնդիրների լուծումը»,— *նշված է Սովետական Միության պարտիական կազմակերպություններին, բոլոր կոմունիստներին ՍՄԿՊ Կենտկոմի հղած բաց նամակում։*

*Վերջին ժամանակաշրջանում ազատագրական պայքարի աճի մասին ակնառու պատկերացում են տալիս հետևյալ տվյալները։ Հետպատերազմյան առաջին հնգամյակում (1946—1950 թթ.) քաղաքական անկախություն են ստացել 13 երկիր, երկրորդում (1951—1955 թթ.)՝ 3, երրորդում (1956—1960 թթ.)՝ 24 և վերջին երկու տարում (1961—1962 թթ.)՝ 10 երկիր։* Հետպատերազմյան ժամանակաշրջանում ընդամենը ստեղծվել է 50 նոր պետություն։

Բացի դրանից, որոշ տերիտորիաներ ազատագրումից հետո մտել են ուրիշ անկախ պետությունների կազմի մեջ (Տոգոյի խնամարկյալ տերիտորիան միացել է Գանային, նախկին անգլիական Սոմալիլենդի տերիտորիան՝ Սոմալիին, Բրիտանական Կամերունը՝ Կամերունին և այլն)։ Հակագաղութային ուժերի զգալի հաղթանակ էր Գոայի վերամիավորումը Հնդկաստանին և Արևմըտյան Իրիանի վերամիավորումը Ինդոնեզիային։ Եթե Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի ժամանակաշրջանում գաղութային տիրապետության տակ էր գտնվում աշխարհի տերիտորիայի 77 և բնակչության 69 տոկոսը, ապա այսօր գաղութատիրության լծի տակ մնացել է աշխարհի տերիտորիայի ընդամենը 7,6 տոկոսը, որտեղ բնակվում է 50 միլիոնից պակաս մարդ, այսինքն՝ երկրագնդի բնակչության մոտ 1,5 տոկոսը։ Այսպիսով, ազգային-ազատագրական շարժումը թևակոխել է գաղութային ռեժիմների վերացման ավարտական փուլը։ Բոլոր հիմքերը կան ենթադրելու, որ այդ ռեժիմին վերջ կտրվի ամենամոտ ժամանակներս։

Ազգային-ազատագրական շարժման հաջողությունների վերաբերյալ բերված տվյալներից կարելի է անել երկու կարևոր եզրակացություն։

Նախ, իմպերիալիզմի կողմից ճնշված ժողովուրդներն արդեն հիմնականում լուծել են ազատագրական շարժման սկզբնական փուլի սկզբունքները՝ նվաճել են քաղաքական անկախություն։ Մեծ մասամբ այդ անկախությունը դեռ կայուն չէ, այն հարկավոր է ամրապնդել։ Բայց որակական ցատկն արդեն կատարված է. քաղաքական ինքնուրույնության պայմաններում լիակատար և վերջնական ազատագրության պայքարի հնարավորություններն անչափ ընդլայնվում են։

Երկրորդ, հակագաղութային ռևոլյուցիաներն ամենամեծ հաջողությունները նվաճել են ոչ թե պատերազմի ժամանակ, այլ խաղաղ գոյակցության պայմաններում։ Ազատագրական շարժումն իր ամենաբարձր մակարդակին է հասել մոտավորապես հիսնական թվականների վերջերին։ Հաղթանակով ավարտվեցին Մարոկկոյի, Թունիսի, Կիպրոսի, Ալժիրի հակաիմպերիալիստական ռևոլյուցիաները։ Կուբայում հակաիմպերիալիստական ռևոլյուցիան վերաճեց սոցիալիստականի։

Հարց է ծագում. այսօր ինչի՞ համար են պայքարում ազատագրվող ժողովուրդները։

Ազգային-ազատագրական շարժման առաջնահերթ





խնդիրն է մնում գաղութատիրության մնացուկների վերացումը։ Պատահական չէ, որ վերջերս ստեղծված Աֆրիկյան միասնության կազմակերպությունը, Ադիս-Աբեբայի կոնֆերանսի որոշումներին համապատասխան, իր գլխավոր ջանքերն ուղղում է Աֆրիկայից գաղութարարներին դուրս վռնդելու գործնական միջոցառումների ընդունման նպատակին (աշխարհամասի ազատագրման ֆոնդի ստեղծումը, Անգոլայում և Մոզամբիկում մղվող զինված պայքարի համար կամավորների պատրաստումը, գաղութատիրական Պորտուգալիայի և ռասիստական Հարավ-Աֆրիկյան Ռեսպուբլիկայի բոյկոտը և այլն)։

Ժողովուրդները ստիպված են ետ մղելու նաև այն գաղութարարների հակագրոհները, որոնց նպատակն է մասնատել ազատագրված երկրները (Կոնգո) կամ, ընդհակառակը, բռնի կերպով մի քանի գաղութ միավորել պետական միասնական կազմավորման մեջ (Մալայզիա) և այդպիսով նրանց նկատմամբ պահպանել իրենց տիրապետությունը։ Երիտասարդ պետությունների մեծ մասում առաջին պլանի վրա են քաշվում իմպերիալիստների նեոգաղութատիրական քաղաքականության (մարիոնետային ռեժիմների ստեղծումը, ստրկական համաձայնագրերի պարտադրումը, ռազմական բազաների պահպանումը, կոնցեսիաների օգնությամբ ազգային հարստությունների զավթումը և այլն) դեմ պայքարի խնդիրները։

Ազգային-ազատագրական շարժման խնդիրների շրջանակը կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանում ավելի լայն է, քան, օրինակ, բուրժուական պետությունների ստեղծման ժամանակաշրջանում։ Այժմ ազատագրական շարժումն ուղղված է ոչ միայն ազգային, այլև սոցիալական ճնշման դեմ։

Քաղաքական անկախության ամրապնդման հետ միասին, ազատագրված պետությունների մեծ մասի համար որպես գլխավոր խնդիր օրակարգում դրվում է լիակատար, այսինքն՝ նաև տնտեսական անկախության նվաճումը։ Բացի դրանից, ժողովրդական զանգվածներն ազատագրումից հետո միանգամայն իրավացի կերպով հարց են դնում, որ ազգային անկախությունը պետք է իրենց տա ռեալ պտուղներ՝ բարձրացնի իրենց կենսամակարդակը, վերացնի աղքատությունն ու հետամնացությունը, ճանապարհ բացի դեպի պետական գործերի կառավարումը։ Ալժիրի ազատագրական շարժումը, աս-

ված է, օրինակ, ազգային ազատագրության ճակատի այսպես կոչված Համմամետյան ծրագրում, «անցել է ազատագրական նացիոնալիզմի փուլերը և մոտեցել է ռևոլյուցիայի ավելի հեռավոր նպատակին՝ հասարակության ռևոլյուցիոն վերափոխմանը»: Այսպիսով, ազատագրված երկրներում հասունացել է արմատական ռեֆորմների, սոցիալական խոր վերափոխումների իրականացման անհրաժեշտությունը:

Պատմական փորձը վկայում է, որ այդպիսի ռեֆորմների ու վերափոխումների իրականացումը, ժողովրդական զանգվածների կյանքի արագ բարելավումը կապիտալիզմի ճանապարհին հնարավոր չէ: Հետևաբար ազատագրական շարժումների առաջնահերթ խնդիրն է դառնում զարգացման նոր, ոչ կապիտալիստական ուղու ընտրությունը: Այդ ուղին առանձին երկրներում կարող է ունենալ իր առանձնահատկությունները, մի շարք անցողական փուլեր, բայց վերջին հաշվով այն ազատագրված ժողովուրդներին տանում է դեպի սոցիալիզմ:

Արդյոք հիմքեր կա՞ն երիտասարդ պետություններում այդպիսի ռևոլյուցիոն պրոցեսները դիտելու որպես հենց ազգային-ազատագրական շարժման փուլ: Անկասկած: Դրանք ունեն վառ արտահայտված հակաիմպերիալիստական ուղղություն: Ազատագրված երկրների առջև ծառացած խնդիրներից յուրաքանչյուրի լուծումը հնարավոր չէ առանց իմպերիալիզմի դեմ հետևողական պայքարի:

Պայքարի նպատակների փոփոխության կապակցությամբ ազգային-ազատագրական շարժման մասնակիցների շարքերում տեղի է ունենում ուժերի վերախմբավորում: Աջ տարրերը, որոնք անկախության համար պայքարի տարիներին հետապնդել են սոսկ նեղ էգոիստական նպատակներ, իսկ այժմ դիմադրում են ազգային-ազատագրական ռևոլյուցիայի հետագա զարգացմանը, անհնար են դարձնում իրենց հետագա ներկայությունը ազատագրական շարժման շարքերում: Կյանքը, պայքարի տրամաբանությունը ռևոլյուցիոն շարժման ղեկավարման գործում ավելի ու ավելի են առաջ քաշում ռևոլյուցիոն տարրերին՝ պրոլետարիատին (այնտեղ, որտեղ նա կա), չքավորագույն գյուղացիությանը, դեմոկրատական ինտելիգենցիային. «Զարգացման ոչ կապիտալիստական ուղին,— ասված է ՍՄԿՊ ծրագրում,— ապահովվում է



բանվոր դասակարգի, ժողովրդական մասսաների, համադեմոկրատական շարժման պայքարով և համապատասխանում է ազգի բացարձակ մեծամասնության շահերին»:

Ազգային-ազատագրական շարժման ժամանակակից, ավելի երկարատև և ավելի բարդ փուլում անչափ մեծանում է մարքսիստական-լենինյան պարտիաների՝ այն միակ ուժի դերը, որը զինված է նոր հասարակարգի կառուցման գիտական տեսությամբ, ուստի և ընդունակ է միավորելու և իր ետևից ճիշտ ճանապարհով տանելու ռևոլյուցիոն մասսաները: Ինդոնեզիայի, Ցեյլոնի, Չիլիի և մի շարք այլ պետությունների կոմունիստներն արդեն կարողացել են իրենց երկրներում ստեղծել ուժեղ ազգային ճակատ, որի շարքերում հաջողությամբ պայքարում են հակաիմպերիալիստական դեմոկրատական ռևոլյուցիայի խնդիրները մինչև վերջ կատարելու, զարգացման ոչ կապիտալիստական ուղու վրա փոխադրվելու համար: Այնպիսի երկրների փորձը, ինչպիսիք են Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկան և Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկան, որոնք դեն են նետել ոչ միայն գաղութային, այլև կապիտալիստական ստրկությունը և այժմ հաջողությամբ սոցիալիզմ են կառուցում, վկայում է, որ ազգային-ազատագրական շարժումն ավելի մեծ հաջողություն է ձեռք բերում այնտեղ, որտեղ ժողովրդական մասսաների ղեկավար ուժն են բանվոր դասակարգը և նրա ավանգարդը՝ մարքսիստական-լենինյան պարտիաները:

Սոցիալիստական պետությունների կողմից իրականացվող խաղաղ գոյակցության քաղաքականությունը ոչ միայն մարդկությանը փրկում է համաշխարհային պատերազմի սարսափներից, այլև ինչպես միջազգային, այնպես էլ ներքին բարենպաստ պայմաններ է ստեղծում հակագաղութային և սոցիալական ռևոլյուցիաների զարգացման համար: Այդպիսի քաղաքականությունը առավելագույն չափով նպաստում է միասնական հակաիմպերիալիստական հոսանքի մեջ արդիականության երեք հիմնական ռևոլյուցիոն ուժերի՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, միջազգային բանվորական շարժման և ազգային-ազատագրական շարժման միավորմանը: Համաշխարհային ռևոլյուցիոն պրոցեսի միասնությունը նրա բաղկացուցիչ մասերից յուրաքանչյուրի հաջողության գրավականն է:

Ազգային-ազատագրական շարժման համար միջազգային բարենպաստ պայմանների ստեղծմանն առաջին հերթին նպաստում են սոցիալիստական երկրների համագործակցության աճն ու ամրապնդումը։ Այդ համագործակցությունը հիմնական բազա և հենարան է նրանց համար, ովքեր պայքարում են շահագործման, բռնության, ստրկացման, իմպերիալիզմի, գաղութակալության, կապիտալիզմի դեմ։ Սոցիալիզմը կապիտալիզմին հաղթում է առաջին հերթին այնպիսի վճռական տեղամասում, ինչպիսին է աշխատանքի արտադրողականության ավելի արագ աճը։ Համաշխարհային սոցիալիստական սիստեմն արդեն տալիս է համաշխարհային արդյունաբերական արտադրության ավելի քան 37 տոկոսը, մինչդեռ 1955 թվականին նրա բաժինը կազմում էր 27 տոկոս։ Շատ ժամանակ չի անցնի, և սոցիալիստական պետությունների համագործակցությունը կապիտալիստական երկրներին կգերազանցի արտադրության բացարձակ ծավալով։ Էկոնոմիկայի զարգացման արագ տեմպերը տնտեսության սոցիալիստական սիստեմին հատուկ օրենքն են։

Խաղաղ գոյակցությունը բացառում է իրենց գաղութներում կամ երիտասարդ պետություններում իմպերիալիստների գազանությունների և բռնությունների հետ սոցիալիստական երկրների ժողովուրդների որևէ հաշտվողականություն։ Քանի դեռ աշխարհում գոյություն ունի կապիտալիզմն իր պատերազմներով, ժողովրդի ճնշմամբ, սոցիալիստական երկրների՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակված ժողովուրդները չեն կարող բավարարվել միայն նրանով, որ իրենք ապրում են ազատության մեջ։

Ավելին, սոցիալիստական երկրները, վճռականապես դատապարտելով իմպերիալիստական և առհասարակ ամեն տեսակի զավթողական պատերազմները, ընդունում են գաղութարարների, ագրեսորների դեմ մղվող ազատագրական, արդարացի պատերազմները։ Այդպիսին էր, օրինակ, Ալժիրի ժողովրդի պայքարը ֆրանսիական իմպերիալիզմի դեմ։

Սովետական Միության պարտիական կազմակերպություններին, բոլոր կոմունիստներին ՍՄԿՊ Կենտրոնա-





կան կոմիտեի հղած բաց նամակում ընդգծված է. «Արտահայտելով մեր պարտիայի գիծը, ընկ. Ն. Ս. Խրուշչովը ասել է. «Ազատագրական պատերազմները կլինեն, քանի դեռ գոյություն ունի իմպերիալիզմը, քանի դեռ գոյություն ունի գաղութակալությունը։ Դրանք ռևոլյուցիոն պատերազմներ են։ Այդպիսի պատերազմները ոչ միայն թույլատրելի, այլև անխուսափելի են, քանի որ գաղութարարները կամավոր կերպով ժողովուրդներին անկախություն չեն տալիս։ Ուստի ժողովուրդները միայն պայքարով, այդ թվում զինված պայքարով, կարող են նվաճել իրենց ազատությունն ու անկախությունը»։

Սովետական Միությունը ժողովուրդների արդարացի պատերազմները պաշտպանում է ոչ միայն քաղաքականապես, բարոյապես, այլև կոնկրետ նյութական օգնություն է ցույց տալիս դրանց։ Շատ ժողովուրդներ իրենց ազատագրական պայքարում հաղթանակի են հասել մեր երկրի բազմակողմանի օգնության շնորհիվ։ Մասնավորապես, Սովետական Միությունից այդպիսի օգնություն են ստացել Ալժիրի և Եմենի ժողովուրդները։

Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների կողմից ազգային-ազատագրական ռևոլյուցիաներին ցույց տրվող օգնության առավել արդյունավետ ձևերից մեկն է հակառևոլյուցիայի ներմուծման կանխումը։ ՍՍՌՄ-ն 1956 թվականին իմպերիալիստական ագրեսորներին ստիպեց հեռանալ Եգիպտոսից, 1957 թվականին կանխեց իմպերիալիստների հարձակումը Սիրիայի վրա։ 1961 և 1962 թվականներին Կուբայի ժողովուրդը Սովետական Միության օգնությամբ վճռական հակահարված տվեց Ազատության կղզու դեմ ագրեսիա կատարելու ամերիկյան իմպերիալիզմի փորձերին։ Պայքարը հակառևոլյուցիայի արտահանման դեմ՝ ՍՄԿՊ-ի, ամբողջ սովետական ժողովրդի պրոլետարական ինտերնացիոնալիզմի ամենավառ դրսևորումներից մեկն է։

Ազգային-ազատագրական շահերին համապատասխանում է նաև սոցիալիստական պետությունների պայքարը խաղաղության և ընդհանուր զինաթափման համար։ Այն դժվարացնում է ազատագրվող ժողովուրդների դեմ իմպերիալիստների պատերազմական լայն ավանտյուրաների սանձազերծումը։ Խաղաղության կողմնակիցների շարժումը պահանջում է ոչ թե ճնշված ժողո-

վորդների, այլ գաղութային տերությունների զինաթափում, նրանց ռազմական բազաների և հենակետերի վերացում, օկուպացիոն բանակների հեռացում, պահանջում է չեղյալ հայտարարել ռազմական դաշինքները։ Ընդհանուր և լրիվ զինաթափումը նշանակում է տնտեսապես թույլ աշխարհամասերում իմպերիալիստական տիրապետության սիստեմից դուրս բերել նրա ռազմական կորիզը։

Ընդհանուր խաղաղության իրադրությունը բարենպաստ պայմաններ է ստեղծում քաղաքական անկախություն ստացած երկրների ներսում ևս ազատագրական շարժումը զարգացնելու համար։ Այդ պայմանները նպաստում են թույլ զարգացած երկրների ժողովուրդների սոցիալական ազատագրման պրոցեսի արագացմանը։ Դրանք թույլ են տալիս ավելի արագորեն հասնելու իսկական տնտեսական անկախության, իրականացնելու աղքատության և հետամնացության վերացման նպատակին ուղղված պրոգրեսիվ միջոցառումներ, հեշտացնում են այդ պետությունների հետագա զարգացման ճիշտ ուղու ընտրությունը։

Ասիայի, Աֆրիկայի, և Լատինական Ամերիկայի այն երկրներում, որոնք զարգանում են կապիտալիստական ճանապարհով, խաղաղ գոյակցության քաղաքականությունը նպաստում է դասակարգային հակասությունների բացահայտմանը, սոցիալական ուժերի սահմանազատմանը։

Վերջապես, սոցիալիստական երկրները միայն խաղաղ գոյակցության պայմաններում կարող են հարաճուն չափերով տնտեսական օգնություն ցույց տալ երիտասարդ պետություններին։ Այդ օգնությունն ազատագրական շարժման հաջողությունների ավելի ու ավելի կարևոր նախադրյալ է դառնում։ Եթե Սովետական Միությունը, իսկ նրա ետևից նաև սոցիալիստական մյուս պետությունները, չվերացնեին իմպերիալիստական տերությունների տնտեսական, տեխնիկական ու ռազմական օգնության մոնոպոլիան, ապա ազատագրված երկրները մինչև այժմ կմնային որպես այդ տերությունների խղճուկ կցորդներ։ Մինչդեռ նրանցից շատերն այսօր ինքնուրույն դեր են կատարում միջազգային ասպարեզում։

Հենց սոցիալիստական երկրների կողմից թույլ զարգացած պետություններին ցույց տրվող աջակցությունն է, որ իմպերիալիստներին հարկադրում է փոքր-



ինչ փոփոխել իրենց օգնության պայմանները հօգուտ ազատություն ստացած ժողովուրդների։

Սովետական օգնությունը, որն ուղղված է ազատագրված երկրների էկոնոմիկայի պետական սեկտորի զարգացման նպատակին, այդտեղ խթանում է բանվոր դասակարգի աճը և սահմանափակում է բուրժուազիայի զարգացումը։ Այն ուժեղացնում է առաջադիմական ուժերի դիրքերը, բարելավում է աշխատավորների վիճակը, ցույց է տալիս սոցիալիզմի առավելությունները։ Սովետական օգնության այդպիսի բնույթը նպաստում է երիտասարդ սուվերեն պետությունների զարգացմանը ոչ կապիտալիստական ուղիով։

Ելնելով սոցիալիստական պետությունների օգնության ռեալ նշանակությունից, մարքսիստ-լենինյանները, ինչպես այդ մասին ասված է ՍՄԿՊ Կենտկոմի բաց նամակում, միշտ ընդգծելով ազգային-ազատագրական շարժման համաշխարհային-պատմական նշանակությունը և նրա մեծ ապագան, այդ շարժման հետագա հաղթանակների գլխավոր պայմաններից մեկն են համարում ամուր դաշինքը և համագործակցությունը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի երկրների՝ որպես իմպերիալիզմի դեմ պայքարի գլխավոր ուժի հետ, և սերտ դաշինքը կապիտալիստական երկրների բանվորական շարժման հետ։

ՍՄԿՊ ծրագրում ասված է, որ խաղաղ գոյակցության պայմաններում «ավելի նպաստավոր հնարավորություններ են ստեղծվում կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի պայքարի համար, հեշտացնում է գաղութային և կախյալ երկրների ժողովուրդների պայքարը իրենց ազատության համար»։

Գ. ՍՏԱՐՈՒՇԵՆԿՈ

# ԱԳԻՏԱՑԻԱՆ ԱՅԳԵԶԱՐԴՈՒՄ

*Արտաշատի արտադրական վարչության Այգեզարդի կոլտնտեսության 6-րդ բրիգադում ագիտատոր Է. Զոհրաբյանը սիստեմատիկաբար զրույցներ է անցկացնում ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի մասին։*

*Կոլտնտեսականները,— պատմում է նա,— հետաքրքրությամբ են լսում իմ պատմածը, իսկ հետո իրենք են խոսում, հարցեր տալիս, ասում այն, ինչ որ բխում է իրենց սրտից։ Օրինակ, վերջին զրույցի ժամանակ, երբ խոսում էի, թե ինչպես է մարդը դաստիարակվում աշխատանքում, կոլտնտեսական Վ. Ստեփանյանը ասաց, որ ինքը աշխատում է ազնվաբար, որովհետև գիտակցում է իր պարտքը, հասկանում է, որ կոմունիզմը կառուցվում է աշխատանքով։*

*Կոլտնտեսական Ստեփանյանը կոմունիստաբար է աշխատում։ Նա բրիգադի բոլոր անդամների համար օրինակ է ծառայում։ Զրույցի ժամանակ, երբ ես հետաքրքրվեցի, թե ով ինչ ցանկություն ունի, Ստեփանյանը ասաց, որ ինքը բոլորին կոչ է անում՝ աշխատել կոմունիստաբար։ Նա ասաց, որ ինքը լավ աշխատանքով իր պարտքն է կատարում հայրենիքի հանդեպ։*

*Մեր բրիգադի անդամները այգիները լավ են մշակել, փորել, խոտը քաղել, սնուցում տվել, վեց անգամ կատարել սրսկում։ Այդ միջոցառումների շնորհիվ բերքը առատ է։*

*Կոլտնտեսականները հանգստի ժամին հավաքվում են դաշտային ագիտկետը և օրվա թարմ թերթեր կարդում։*

*Մենք հանդիպեցինք ագիտատոր Է. Զոհրաբյանին և հանգամանորեն ծանոթացանք նրա շնորհակալ աշխատանքին։ Նախ ասենք, որ նա կոլտնտեսության մեջ աչքի է ընկնում որպես ակտիվ աշխատող։ Մենք նրան հանդիպեցինք բամբակի դաշտում՝ ջուր անելիս։*

*— Աշխատում եմ գիշեր ու ցերեկ,— ասաց նա,— դե գիտեք էլի, ինչ ասեմ, ջուրը ափսոս է, գիշերն էլ պետք է օգտագործել, հետո ջրվորը չի կարող ջուրը բաց թողնել դաշտի վրա և տուն գնալ կամ քնել թեկուզ կես ժամ. մեկ էլ տեսար դաշտը ողողվեց, քարուքանդ եղավ, ջուրը քշեց տարավ ամեն ինչ։ Պետք է միշտ հետևել ջրի ընթացքին։*



*— Իսկ այգեփորի ժամանակ մեր ագիտատորը աշխատում է հերոսի նման, —ասում է բրիգադիր Զ. Զաքարյանը,— նա իր զրույցները ամրապնդում է աշխատանքի անձնական օրինակով։*

*Մոտ երկու տարի է ինչ Է. Զոհրաբյանը վերադարձել է Սովետական բանակից և այդ օրվանից էլ մեծ սիրով ու եռանդով, ինչպես հատուկ է կոմունիստին, աշխատում է կոլտնտեսության արտադրության մեջ։ Եվ այդ է պատճառներից մեկը, որ նրան ունկընդիրները լսում են հետաքրքրությամբ և հաճախ իրենք են դիմում ագիտատորին ասելով, թե այսօր ի՞նչ լավ բան կհաղորդես մեզ։ Կոլտնտեսական Հ. Ղարիբյանն ասում է.*

*— Երբ մեր ագիտատորը մեզ հետ խոսում է, կարծես մեր սրտից է պատմում, կարծես մեր եղբայրն է կամ մոտիկ բարեկամը, որովհետև նրա ասածները մեր հոգուն մոտ են, մեր սրտին հարազատ։ Այ, վերցնենք հենց բերքի մշակման ու պահպանման հարցը։ Անընդհատ անձրևների պատճառով խաղողի այգիներում հիվանդություններ էին տարածվում։ Մեր ագիտատորը մեզ հաճախ հիշեցնում էր, որ պետք է աչալուրջ լինել, ջանք չխնայել և կռվել վնասատուների դեմ, այլապես բերքը կկորչի։ Ինքն էլ մեզ օրինակ էր տալիս իր աշխատանքով։ Մենք հաղթեցինք, ժամանակին բուժեցինք հիվանդությունները և բերքը փրկեցինք։ Կարող եմ ասել, որ բերքը առատ կլինի։*

*Ագիտատոր Է. Զոհրաբյանի զրույցները միշտ անցնում են գործարար մթնոլորտում և ունենում են իրենց գոհացուցիչ արդյունքները։ Զրույցի ժամանակ հաճախ է պատահում, որ կոլտնտեսականներն իրար դիտողություններ են անում, պաշտպանում ագիտատորի առաջ քաշած հարցերն ու առաջարկները։ Կոլտնտեսական Ա. Հայրապետյանի ուշադրությունից չվրիպեց, որ Կ. Մկրտչյանը այգու սրսկումը լավ չի կատարում։ Լռել չէր կարելի։ Ագիտատորը իր ունկընդիրներին սովորեցրել էր, որ թերությունները պետք է չհանդուրժել։ Եվ ահա բարեխիղճ կոլտնտեսականը դիտողություն արեց ընկերոջը։ Այդ մասին խոսվեց նաև ագիտատորի զրույցի ժամանակ։ Թերությունը շտկվեց անմիջապես։*

*Եվ այսպես, ագիտատոր Է. Զոհրաբյանը իր պարզ ու նպատակասլաց զրույցներով կոլտնտեսականների մեջ զարգացնում է սեր ու հարգանք դեպի աշխատանքը,*

նրանց գիտակցությանն է հասցնում պարտիայի խոսքը և պայքարի է ոգեշնչում կոմունիզմի կառուցման ճակատում։

Մենք պատմեցինք Արտաշատի արտադրական վարչության Այգեզարդ գյուղի կոլտնտեսության ագիտատորներից մայն մեկի աշխատանքի մասին։ Բայց նրանց թիվը շատ է, երեք տասնյակից ավելի։ Ուսուցիչների, գյուղատնտեսության մասնագետների, կոլտնտեսության ղեկավարների հետ միասին քաղաքական-մասսայական ակտիվ աշխատանք են կատարում նաև շարքային շատ կոմունիստներ, որոնք կոլտնտեսականների հետ կողք-կողքի աշխատում են արտադրության մեջ։ Վերջիններիս օգնելու նպատակով պարտկազմակերպությունը պարտբյուրոյի անդամներին ամրացրել է բրիգադներին։ Այդ ձևով պարտբյուրոն, որի քարտուղար Ա. Մայիլյանը միաժամանակ ագիտկոլեկտիվի ղեկավարն է, մեծ ուշադրություն է դարձնում աշխատավորների մեջ կատարվող ամենօրյա քաղաքական-դաստիարակչական աշխատանքներին և կարողանում է կոնկրետ օգնություն ցույց տալ ագիտատորներին։

Պարտիայի Կենտկոմի հունիսյան պլենումի նյութերը մասսայականացնելու և բոլոր աշխատավորների գիտակցությանը հասցնելու նպատակով ագիտկոլեկտիվը օգտագործում է բազմազան ձևեր։ Ահա կուլտուրայի տան ընթերցարանում պատրաստված ստենդներից մեկը։ Նրա ճակատին խոշոր տառերով գրված է՝ «Անշեղորեն կենսագործենք ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումները»։ Ստենդը գեղեցիկ է, ճաշակով ձևավորված, նկարազարդ ու գրավիչ։ Ստենդը պրոպագանդում է հունիսյան պլենումի որոշումները։

Ագիտատորները աշխատավորներին պարզաբանում են մեծ ճշմարտությունը, այն, որ կոմունիստական պարտիան բացի մարդու համար ամենաերջանիկ կյանք ստեղծելուց, ուրիշ նպատակ չունի։ Եվ այդ վեհ նպատակին են ուղղված պարտիայի Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումները։

Ագիտկոլեկտիվի ղեկավարի հանձնարարությամբ կուլտուրայի տան դիրեկտոր Հ. Մանուկյանը պատրաստել է կոլտնտեսության՝ իրար հետ մրցող բրիգադների ցուցատախտակներ, որոնց վրա կարելի է կարդալ ոչ միայն նրանց պարտավորությունները, այլև կատարած աշխատանքի արդյունքները, կարելի է տես-





նել մրցության առաջավորների ցուցանիշներն ու լուսանկարները։ Այստեղ կուլտուրայի տան և գրադարանի աշխատողները ագիտկոլեկտիվի ակտիվ օգնականներն են։ Կուլտուրայի տուն կամ գրադարան մտնողը կարող է անմիջապես օգտվել հունիսյան պլենումի նյութերից, որոնք պատրաստ դրված են սեղաններին, կարող է դիմել բիբլիոգրաֆիայի օգնությանը՝ իմանալու համար, թե ո՞ր նյութը թերթի ո՞ր համարումն է հրապարակված, ի՞նչ կարդալ պարտիայի XXII համագումարի, ինչպես նաև հունիսյան պլենումի վերաբերյալ և այլն։ Իրենց զրույցների համար ագիտատորները բազմակողմանի օգնություն են ստանում կուլտուրայի այդ օջախներից։ Կուլտուրայի տան շրջակայքում, զբոսայգում կան բազմաթիվ և ճաշակով պատրաստված ցուցատախտակներ, որոնք աշխատավորներին ծանոթացնում են թե ինչքան խաղող, բամբակ, բանջարեղեն, միս, կաթ և այլ մթերքներ է արտադրելու այս տարի Այգեզարդի կոլտնտեսությունը, ինչպիսի հաղթանակների է հասնելու սովետական ժողովուրդը յոթնամյակում։

Այգեզարդի կոլտնտեսության գործերը լավ են գնում և կարող ենք ասել, որ այդ գործում իր համեստ մասնակցությունն ունի նաև ագիտկոլեկտիվը։

— Այժմ հազիվ թե մեր գյուղում գտնվի մեկը, որը խուսափի աշխատանքից,— ասում է ագիտկոլեկտիվի ղեկավարը,— նույնիսկ այն օրերին, երբ դաշտում աշխատանք չկա կատարելու, շատերը գալիս են կոլտնտեսության վարչություն և աշխատանք պահանջում։

Այո, հենց լավ աշխատանքն էլ, հայրենիքի հանդեպ ունեցած պարտքի գիտակցումն էլ այգեզարդցիներին նորանոր հաջողություններ են բերում, բարձրացնում նրա՝ որպես լավագույն կոլտնտեսության համբավը ռեսպուբլիկայում և ամբողջ երկրում։

Ա. ՊԵՏՐՈՍՅԱՆ

# ԹՎԵՐԻ ԼԵԶՎՈՎ

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Վերջին տասը տարիները Սովետական երկրի ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում նշանավորեցին աչքի ընկնող հաղթանակներով: Մեր կյանքի այդ մեծ տասնամյակում նշանակալից հաջողություններ ձեռք բերվեց նաև գյուղատնտեսության զարգացման բնագավառում: Ահա թվեր և փաստեր այդ մասին.

*Վերջին տասնամյակում Սովետական Միությունում գյուղատնտեսության համախառն արտադրանքը ավելացավ 67 տոկոսով։ Ցանքատարածության աճը կազմեց 60,2 միլիոն հեկտար, 1918—1952 թվականների 37,5 միլիոն հեկտարի դիմաց։*

*Հացահատիկային կուլտուրաների համախառն բերքի աճը համապատասխանորեն կազմեց՝ 3,4 միլիարդ փութ, 0,4 միլիարդ փթի դիմաց, մսինը և ճարպինը՝ 4,2 միլիոն տոննա, 0,2 միլիոն տոննայի դիմաց, կաթինը՝ 28,3 միլիոն տոննա, 6,3 միլիոն տոննայի դիմաց։*

*Եթե 1953 թվականին Սովետական Միության գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների ամբողջ ցանքատարածությունը կազմում էր 157,2 միլիոն հեկտար, ապա 1963 թվականի առաջին կիսամյակում այն հասավ 218,1 միլիոն հեկտարի, իսկ միայն անցյալ տարվա համեմատությամբ այն ավելացել է 2,1 միլիոն հեկտարով։*

*Հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունը (առանց եգիպտացորենի) 1953 թվականի 103,2 միլիոն հեկտարի դիմաց 1963 թվականին կազմեց 129,6 միլիոն հեկտար, կամ 7,9 միլիոն հեկտարով ավելի, քան անցյալ տարի։ Այդ թվում համապատասխանաբար ցորենինը՝ 48,3 միլիոն հեկտարից հասավ 67,0 միլիոն հեկտարի, կորեկինը՝ 4,1-ից 4,7 միլիոն հեկտարի, հատիկալոբազգիներինը՝ 2,4-ից 12,8 միլիոն հեկտարի, եգիպտացորենինը՝ 3,5-ից 33,9 միլիոն հեկտարի, շաքարի ճակնդեղինը՝ 1,57-ից 3,3 միլիոն հեկտարի,*



*բամբակինը՝ 1,88-ից 2,43 միլիոն հեկտարի, երկարաթել վուշինը՝ 1,24-ից 1,50 միլիոն հեկտարի։*

*Անասունների և թռչունների (սպանդանոցային քաշի վերածած) պետական գնումների չափը 1953 թվականին կազմում էր 2 միլիոն 100 հազար տոննա, իսկ 1963 թվականի առաջին կիսամյակում այն հասավ 2 միլիոն 158 հազար տոննայի, համապատասխանաբար կաթինը՝ 10 միլիոն 600 հազար տոննայից հասավ 13 միլիոն 34 հազար տոննայի, իսկ ձուն՝ 2 միլիոն 618 հազարից հասավ 6 միլիոն 189 հազար հատի։*




*Միայն 1963 թվականի առաջին կիսամյակի ընթացքում պետությունը գյուղատնտեսությանը հատկացրել է 113 հազար տրակտոր, 39 հազար բեռնատար ավտոմոբիլ, 127 հազար տարբեր տիպի կոմբայն, ավելի քան 3 հազար բամբակահավաք մեքենա, 20 հազար կթի սարք, 327 հազար կախովի և կցովի գյուղատնտեսական մեքենաներ։*

*Անցած տասնամյակում աննախընթաց վերելք ապրեց նաև Հայկական ՍՍՌ գյուղատնտեսությունը։ Մեծ չափով ավելացվեցին ու ընդարձակվեցին խաղողի և պտղատու այգիները, հացահատիկի, շաքարի ճակնդեղի, ծխախոտի, բանջարեղենի և այլ կուլտուրաների ցանքատարածությունները։ Գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների ցանքատարածությունները ռեսպուբլիկայում այժմ կազմում են 412,7 հազար հեկտար։ Այդ թվում,*

հացահատիկային կուլտուրաներ՝ (առանց եգիպտացորենի) 231,7 հազար հեկտար, ցորեն՝ 143,5 հազար հեկտար, հատիկալոբազգիների կուլտուրաներ՝ 4,5 հազար հեկտար, հատիկացու, սիլոսացու և կանաչ կերի եգիպտացորեն՝ 23,5 հազար հեկտար, բամբակենի՝ 10,5, ծխախոտ՝ 7,8, կարտոֆիլ՝ 15,5, բանջարեղեն՝ 8,7 հազար հեկտար։

Զգալիորեն ավելացավ անասնապահական մթերքների արտադրությունը․ 1953 թվականից մինչև 1962 թվականը մսի արտադրությունը ավելացել է 63 տոկոսով, կաթինը՝ 86, բրդինը՝ 60, իսկ ձվինը՝ 125 տոկոսով։

Այս տարվա առաջին կիսամյակում անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ կոլտնտեսություններում ու սովխոզներում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացավ 24 հազարով կամ 5 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 4,9 հազարով կամ 4 տոկոսով, ոչխարներինը և այծերինը՝ 115,4 հազարով կամ 7 տոկոսով, թռչուններինը՝ 191,6 հազարով կամ 9 տոկոսով։ Մեկ կովի միջին կաթնատվությունը ավելացավ 6 տոկոսով։

Եթե 1962 թվականի առաջին կիսամյակում անասունների և թռչունների (կենդանի քաշով) պետական գնումների չափը կազմում էր 71,2 հազար ցենտներ, ապա 1963 թվականի առաջին կիսամյակում այն հասավ 84,4 հազար ցենտների, համապատասխանաբար կաթինը՝ 768,4 ցենտներից՝ 921,1 հազար ցենտներ, ձվինը՝ 33,1 հազարից հասավ 36,7 հազար հատի։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության հետագա զարգացման նպատակով 1962 թվականից սկսվեց Ապարանի ջրամբարի շինարարությունը, որը կարևոր դեր կխաղա ոչ միայն ոռոգման ասպարեզում, այլև կկրճատի Սևանա լճից հոսող ջուրը։ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության հետագա վերելքի գործում կարևոր դեր կխաղա նաև Ախուրյանի ջրամբարի նախապատրաստվող շինարարությունը։



# ԲԱՐԵԿԱՄԱԿԱՆ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ԿԱՊԵՐ

Արտասահմանյան երկրների հետ բարեկամության և կուլտուրական կապի հայկական ընկերությունը տարեցտարի ընդլայնում է կուլտուրական ու բարեկամական կապերը աշխարհի շատ ու շատ երկրների հետ։

Բարեկամության հայկական ընկերությանը կից ստեղծված են սովետա-բուլղարական բարեկամության ընկերություն, սովետա-ռումինական բարեկամության ընկերություն, «ՍՍՌՄ—Ֆրանսիա» ընկերություն, Արաբական Արևելքի երկրների հետ բարեկամության ու կուլտուրական կապի սովետական ընկերություն, Լատինական Ամերիկայի երկրների հետ բարեկամության և կուլտուրական համագործակցության սովետական ասոցիացիայի բաժանմունքներ, ինչպես նաև 10 սեկցիաներ՝ ստեղծագործական միավորումներ, որոնց մեջ մտնում են ռեսպուբլիկայի խոշոր գիտնականներ, գրողներ, արտիստներ, նկարիչներ, կոմպոզիտորներ, երաժիշտներ և ինտելիգենցիայի այլ ներկայացուցիչներ։ Այս հասարակական կազմակերպությունների նպատակն է պրոֆեսիոնալ շահերի ընդհանրության հիման վրա ամրապնդել միջազգային բարեկամական ու կուլտուրական կապերը, դրանք օգտագործել մարդկային գիտելիքների առաջադիմության, ժողովուրդների բարեկամության ամրապնդման համար։

Առանձնահատուկ հետաքրքրություն է ներկայացնում հայկական ընկերությանը կոլեկտիվ կերպով ու անհատապես անդամագրվելը։ Տասնյակ խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ, կոլտնտեսություններ, սովխոզներ, գիտական հիմնարկներ, ստեղծագործական կազմակերպություններ մեր ընկերության կոլեկտիվ անդամներ են։ Նրանք, ըստ էության, կազմում են սկզբնական կազմակերպությունների բավականին լայն ու ճյուղավորված ցանց, որի միջոցով ընկերության աշխատանքին մասնակցում են բազմաթիվ մարդիկ։ Այդ

կազմակերպությունների առկայությունը նպաստում է օտարերկրյա կազմակերպությունների հետ բարեկամական ու կուլտուրական կապերի հետագա ընդլայնմանը։

Արտասահմանյան երկրների հետ բարեկամության և կուլտուրական կապի հայկական ընկերությունը այժմ կապեր ունի 42 երկրների 455 զանազան կազմակերպությունների և գիտության ու կուլտուրայի շատ գործիչների հետ։ Այդ կազմակերպությունների թվում կան բարեկամության ընկերություններ և ինստիտուտներ, կուլտուրայի տներ։ Ընկերությունը կապեր է պահպանում Լեհաստանի, Բուլղարիայի, Ռումինիայի, Չինաստանի, Կորեայի, Չեխոսլովակիայի, Հարավսլավիայի, ԱՄՆ-ի, լատինաամերիկյան մի քանի երկրների, Ֆրանսիայի, Անգլիայի, Բելգիայի, Իտալիայի, Լիբանանի, ՄԱՌ-ի և շատ այլ երկրների զանազան կազմակերպությունների հետ։

Մեր ընկերությունը լայն կապեր ունի աշխարհի տարբեր երկրների հայկական առաջադիմական կազմակերպությունների, թերթերի ու ամսագրերի խմբագրությունների հետ։

Բազմաթիվ հայեր, որոնց ճակատագիրը ցրել է աշխարհով մեկ, բնականաբար ձգտում են դեպի մայր հայրենիք։ Նրանք հետաքրքրվում են Սովետական Հայաստանի բոլոր նվաճումներով։

Սփյուռքի հայկական կազմակերպությունների խնդրանքով մեր ընկերությունը նրանց համար ուղարկում է գեղարվեստական գրականություն, դասագքեր, պարբերական հրատարակություններ (թերթեր, ժուռնալներ), կինոֆիլմեր, հայկական ազգային երաժշտության ձայնապնակներ, հոդվածներ արտասահմանյան հայկական թերթերի ու ժուռնալների համար, ակնարկներ, լուսանկարներ, ինչպես նաև «Սովետական Հայաստան» ամսագրի համարները։ Այս բոլոր նյութերից սփյուռքի հայությունը քաղում է անհրաժեշտ նյութեր և հետևում իր հայրենիքի զարգացմանը։

Մեր ընկերության օգնությամբ բազմաթիվ կազմակերպություններ և առանձին գիտական աշխատողներ կապեր են հաստատում համասեռ կազմակերպությունների, իրենց արտասահմանյան կոլեգաների հետ, նրանց հետ կատարում փորձի բազմակողմանի փոխանակություն։ Այս նույն նպատակով, ինչպես նաև փոխադարձ օգնության ու արտասահմանյան երկրների



կյանքին ծանոթանալու համար, ռեսպուբլիկայի արտադրական ձեռնարկությունները կապեր են պահպանում Ռումինիայի, Բուլղարիայի, Չեխոսլովակիայի, Լեհաստանի և այլ երկրների համասեռ ձեռնարկությունների հետ։ Իրենց արտասահմանյան կոլեգաների հետ սերտ կապեր ունեն ռեսպուբլիկայի գիտությունների ակադեմիայի գիտնականները։ Մատենադարանը, պետհամալսարանի գիտական գրադարանը մշտական գիտական կապեր ունեն և գրականության փոխանակություն են կատարում Չեխոսլովակիայի, Լեհաստանի, Ռումինիայի, ԱՄՆ-ի, Ֆրանսիայի և այլ երկրների գիտնականների ու զանազան կազմակերպությունների հետ։ Ռեսպուբլիկայի կոմպոզիտորները, նկարիչները, գրողները սերտ կոնտակտներ են պահպանում ժողովրդական դեմոկրատիայի երկրների, Արգենտինայի, Հնդկաստանի և շատ այլ երկրների իրենց կոլեգաների հետ։ Բարեկամական լայն կապեր ունեն ռեսպուբլիկայի դպրոցները, Երևանի պիոներների պալատը, որտեղ կա ինտերնացիոնալ բարեկամության սենյակ։

Հայկական ընկերությունը մեծ աշխատանք է կատարում ռեսպուբլիկայի հասարակայնությանը արտասահմանի ժողովուրդների կյանքին և կուլտուրային ծանոթացնելու համար։ Այդ աշխատանքը կատարվում է նշանավոր և պատմական տարեթվերին նվիրված երեկոներ, ցուցահանդեսներ և առանձին թեմատիկ զեկուցումներ կազմակերպելու, բարեկամության միամսյակներին և տասնօրյակներին մասնակցելու միջոցով, որոնք իրականացվում են ընկերության կոլեկտիվ անդամների լայն ակտիվ մասնակցությամբ ոչ միայն մայրաքաղաքում, այլև ռեսպուբլիկայի մյուս քաղաքներում, շրջկենտրոններում, ձեռնարկություններում։ Այդ միջոցառումները լայնորեն լուսաբանվում են ռեսպուբլիկական պարբերական մամուլում, հաղորդվում են ռադիոյով և հեռուստատեսությամբ։

1962 թվականին նշվեցին Հունգարիայի, Չեխոսլովակիայի, Լեհաստանի, Ռումինիայի, ԳԴՌ-ի, Բուլղարիայի, Կուբայի, Արգենտինայի և ուրիշ երկրների ազգային տոները։ Նշվեցին Վ. Հյուգոյի ծննդյան 160-րդ տարեդարձը, Չ. Դիկենսի ծննդյան 150-րդ, Թ. Էդիսոնի ծննդյան 115-րդ, Լեոնարդո դա Վինչիի ծննդյան 510-րդ, Կարաջալի ծննդյան 50-րդ, Ժան Ժակ Ռուսոյի ծննդյան 250-րդ տարեդարձը և այլն։ Այս տարվա հունվարի 1-ին մայրաքաղաքի հասարակայնու-

թյունը նշեց Կուբայի ժողովրդական ռևոլյուցիայի հաղթանակի օրը։ Նշվել են նաև ՍՍՌՄ-ի ու Ռումինիայի, ՍՍՌՄ-ի ու Բուլղարիայի բարեկամության, համագործակցության և փոխադարձ օգնության պայմանագրերի ստորագրման 15-րդ տարեդարձը, ՍՍՌՄ-ի և Լեհաստանի միջև կնքված պայմանագրի 18-րդ տարեդարձը։

Ամեն տարի աշխարհի տարբեր մայրցամաքներից մեր ռեսպուբլիկա են գալիս բազմաթիվ պատվիրակություններ, տուրիստական խմբեր, այդ թվում սփյուռքահայեր։ Նրանք ծանոթանում են Սովետական Հայաստանի էկոնոմիկայի և կուլտուրայի նվաճումներին։

1962 թվականին Հայաստան պատվիրակություններ ու հյուրեր են եկել Կուբայից, Կանադայից, Չիլիից, Իսլանդիայից, Հոնդուրասից, Զանզիբարից, Նեպալից, Բելգիայից, Ավստրիայից, Ռումինիայից, Տանգանիկայից, Անգլիայից, Ուրուգվայից, Դանիայից, Բիրմայից, ԱՄՆ-ից, Իտալիայից։ Մեզ մոտ տուրիստական շատ խմբեր են եղել (մոտ 1000 մարդ) աշխարհի տարբեր երկրներից։

1963 թվականին մեր ռեսպուբլիկա այցելեցին Հունգարիայի կանանց պատվիրակությունը, Իրանի պատվիրակությունը, Նորվեգիայի, Ինդոնեզիայի, Մալիի և աշխարհի տարբեր երկրների բազմաթիվ տուրիստներ։

Ընկերության աշխատանքում հատուկ տեղ է գրավում Սովետական Հայաստանի 40-ամյակի տոնակատարությունը 1961 թվականի մայիսին։ Հոբելյանին Սովետական Հայաստան էին հրավիրվել արտասահմանի հայկական գաղութների ներկայացուցիչները։ Հյուրերը ծանոթացան մեր առաջընթացին, հանդիպումներ ունեցան պարտիական և պետական ղեկավարների, գրողների, էկոնոմիկայի և կուլտուրայի տարբեր ճյուղերի աշխատողների հետ։ Արտակարգ հիացմունք առաջացրեց մեր հյուրերի հանդիպումը Ն. Ս. Խրուշչովի հետ։

Արտասահմանյան երկրների հետ բարեկամության և կուլտուրական կապի հայկական ընկերությունը ջանքեր չի խնայում արտասահմանյան երկրների ժողովուրդների հետ ռեսպուբլիկայի հասարակայնության կուլտուրական ու բարեկամական կապերն ամրապնդելու համար։

Ա. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ



## ՕԼԳԱ ԳՈՒԼԱԶՅԱՆ



Հայ թատրոնի երկհազարամյա պատմության շքեղ էջերում իր պատվավոր, ուրույն տեղն ունի Օլգա Գուլազյանը։ Նա բեմ բարձրացավ այն պահին, երբ գործում էին թատրոնի անզուգական վարպետներ Սիրանույշը և Հովհաննես Աբելյանը։ Առաջին մեծ դերը, որի կատարմամբ Գուլազյանը լայն ճանաչում է գտել թատերասեր հասարակության շրջանում և արժանացել բարձր գնահատականի․ դա Գայանեի դերն էր Ա. Յուժին-Սումբատովի «Դավաճանություն» պիեսում։ Թե որքան փայլուն է եղել այդ դերակատարումը վկայել է տիկին Սիրանույշը։ Նա հիացած Գուլազյանի խաղով ասել է. «Գայանեի դերը Գուլազյանը կատարում է մի այնպիսի հաջողությամբ, որ ոչ մի մրցակից չունի հայ բեմի վրա»։ Իր տաղանդի և աշխատասիրության շնորհիվ Գուլազյանը դերից դեր աճում ու էլ ավելի է կատարելյագործում իր արվեստը։ Նա իր բեմական գործունեության վաղ արշալույսին շատ է սիրել ու խաղացել երիտասարդ աղջիկների և փոքր տղայի դերեր։ Նա տղայի առանձին դերեր կատարել է այնպիսի վարպետությամբ, որ ժամանակի մամուլը գրել է, որ տիկին Գուլազյանը տղայի դերերն ավելի լավ է կատարում, քան թե իրենք՝ տղաները։

Ժողովրդի կողմից լայն ճանաչում գտած դերասանուհու խաղարվեստը նոր նրբերանգներով է բացահայտվել, երբ նա հանդես է եկել Յուժին-Սումբատովի «Շղթաներ» դրամայում, կատարելով Օլգայի դրամատիկական ներքին ապրումներով հարուստ դերը։ Ինչպես այդ, այնպես էլ Հենրիի («Օվկիանոսից այն կողմ») դերակատարումներով նա հիացմունք է պատճառել հանդիսատեսին։

Օլգա Գուլազյանը ժողովրդի ծոցից ելավ ու իր արվեստով գնաց դեպի ժողովուրդը։ Արվեստը ծառայեցնել ժողովրդին, ահա նրա կյանքի վեհ նպատակը։ Գուլազյանը հայ տարբեր թատերախմբերի հետ շրջել է Հայաստանի գրեթե բոլոր գավառները։ Եղել է Ռուսաստանում, Իրանում, Թուրքիայում և իր խաղացած դերերով՝ Դեզդեմոնա («Օթելլո»), Օֆելյա («Համլետ»), Գրետխեն («Երեկոյան շեփոր»), Վահանդուխտ («Մեծ Վարդան»), Ռոզինա («Սևիլյան սափրիչ») հիացրել ոչ միայն հայ, այլ նաև ռուս ու պարսիկ հանդիսականներին։

Գուլազյանը բյուրավոր տառապանքներ կրած հայ արվեստագետների հետ միասին ուրախությամբ է դիմավորել Անդրկովկասում սովետական կարգերի հաստատումը։ Հրաժեշտ տալով մշտական թափառումներին ու բազում զրկանքներին, հայ թատրոնի այդ անխոնջ մշակը 1926 թվականին տեղափոխվում է Երևան, Գաբրիել Սունդուկյանի անվան պետական թատրոն, որտեղ և նրա առաջ բացվում են ստեղծագործելու նոր ու գեղեցիկ հեռանկարներ։ Հայ թատերական կուլտուրայի այս փառաբանված օջախում, բեմական երկար ուղի անցած արտիստուհու տաղանդը փայլատակում է նոր ուժով։ Սկսվում է Գուլազյանի ստեղծագործական կյանքի ամենաբեղմնավոր շրջանը։ Շատ է Գուլազյանի խաղացած դերերի թիվը, նա ստեղծել է մոտ 400 կերպար։

Սակայն նրա ստեղծած կերպարների պատկերասրահում առաջնության դափնեպսակը իրավամբ պատկանել է Եփեմիա («Պեպո»), Սալոմե («Էլի մեկ զոհ»), Նատալիա («Խաթաբալա»), Օգուդալովա («Անօժիտը»), Կուկուշկին («Եկամտավոր պաշտոն») բեմարվեստի այդ կատարյալ գլուխգործոցներին։ Գուլազյանի դերասանական տաղանդն իր ամբողջ հմայքով բացահայտվել է այս դերակատարումներում։ Նա այդ դերերը մեկնաբանելիս իրավացիորեն ելել է այն սոցիալական միջավայրից, ուր տիրում էր դրամի իշխանությունը։ Ահա թե ինչու Գուլազյանն իր ստեղծած տիպական կերպարներով կարողացել է այդքան անողոք կերպով մերկացնել այդ միջավայրի այլանդակ բարքերը, ցույց տալ, թե ինչպես կարող է այդ հեղձուցիչ մթնոլորտում ապականվել մարդու հոգին, անգամ մայրական զգացմունքը։ Գուլազյանի ստեղծած այս կերպարները իրենց գեղարվեստական կատարելությամբ և ճանաչողական մեծ նշանակությամբ խոշոր ներդրում են սովետահայ թատրոնում։ Նա իր տաղանդին հատուկ ուժով ու մեծ ջանասիրությամբ, այսօր էլ Սունդուկյանի անվան թատրոնում շարունակում է ստեղծագործել ու հարստացնել իր խաղացանկը։ Նրա կերտած վառ ու ինքնատիպ կերպարները ցույց են տալիս, որ չնայած իր պատկառելի տարիքին, նա դեռևս հոգով երիտասարդ է։ Ով տեսել է Գուլազյանին տատիկի դերում («Ծառերը կանգնած են մահանում») նա հազիվ թե հիացած չլինի դերասանուհու փայլուն խաղով։ Կերպարի խոր հոգեբանական անցումները պատկերել այդպիսի վարպետությամբ, հատուկ է միայն իսկական շնամրող տաղանդով օժտված արվեստագետին։

Օլգա Գուլազյանի արվեստը հուզիչ ու մատչելի է հասարակության լայն խավերին։ Նա ժողովրդի կողմից սիրված ու փայփայված արտիստուհի է։

Ռ. ՎԱՐԴԱՆՅԱՆ
ՀԿՊ Կենտկոմի նրահանգիչ

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Սեր և հարգանք դեպի հանրօգուտ աշխատանքը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Պարտիայի գաղափարական աշխատանքի հերթական խնդիրների մասին, ՍՄԿՊ Կենտկոմի 1963 թվականի հունիսյան պլենումի որոշումը, տպագրված «Ս. Հ.»-ի հունիսի 23-ի համարում և առանձին բրոշյուրով, Հայպետհրատ, 1963։

Լ. Ֆ. ԻԼՅԻՉՈՎ— Մենք կոմունիստական աշխատանքի հաղթանակին կհասնենք աշխատանքի նկատմամբ սեր դաստիարակելու միջոցով. ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումում տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 19-ի և 20-ի համարներում և առանձին բրոշյուրով, Հայպետհրատ, 1963։

ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ— ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան

պլենումի արդյունքների և գաղափարական աշխատանքը բարելավելու ուղղությամբ ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպության խնդիրների մասին, զեկուցում ՀԿՊ Կենտկոմի պլենումում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 7-ի համարում։

## 2. Անում և ամրապնդվում է ժողովուրդների բարեկամությունը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ, արտասանած Սովետական Միության և Հունգարական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ժողովուրդների բարեկամության միտինգում, 1963 թվականի հուլիսի 19-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 20-ի համարում։

Սովետական Միության կոմունիստական պարտիայի Կենտրոնական կոմիտեի բաց նամակը Սովետական Միության պարտիական կազմակերպություններին, բոլոր կոմունիստներին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 16-ի համարում։

## 3. Աշխատանքի արտադրողականության բարձրացումը մեր առաջնահերթ խնդիրն է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Աշխատանքի արտադրողականության բարձրացումը, Երկեր, հատոր 27, էջ 306—310, Հայպետհրատ, 1951։

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ, արտասանած ՌՍՖՍՌ-ի արդյունաբերության և շինարարության աշխատողների խորհրդակցությունում, 1963 թվականի ապրիլի 24-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի ապրիլի 26-ի և 27-ի համարներում։

Գործի դնել ներարտադրական ռեզերվները, հոդված տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 4-ի համարում։

## 4. Գյուղատնտեսության մթերքների արտադրության վերելքի ապահովումը գյուղի աշխատողների առաջնահերթ խնդիրն է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ամրապնդել և բազմապատկել գյուղատնտեսության հաջողությունները։ Ավելի լրիվ



բավարարել բնակչության պահանջմունքները գյուղատնտեսական մթերքների ասպարեզում, ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, էջ 104—112, Հայպետհրատ, 1961։

Պետության վաճառվող հացահատիկի ավելացման ասպարեզում Կրասնոդարի երկրամասի կոլտնտեսությունների ու սովխոզների սոցիալիստական պարտավորությունների մասին, ՍՄԿՊ Կենտկոմում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 25-ի համարում։

Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի գյուղատնտեսության ղեկավարման բյուրոյում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 23-ի համարում։

## 5. Միջուկային զենքի փորձարկումների արգելման պայմանագիրը խաղաղության գրավականն է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության կոմունիստական պարտիայի Կենտրոնական կոմիտեի բաց նամակը Սովետական Միության պարտիական կազմակերպություններին, բոլոր կոմունիստներին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 16-ի համարում։

Սովետական կառավարության հայտարարությունը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի օգոստոսի 4-ի համարում։

Մթնոլորտում, տիեզերական տարածության մեջ և ջրի տակ միջուկային զենքի արգելման պայմանագիր, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հուլիսի 26-ի համարում։

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ՍՏ. ՇԱՀՈՒՄՅԱՆԻ ԱՆՎԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ՏՈՒՆ

Ինդեքս՝ 77704



# ԼՈԲԲԻԶՄ

*Այսպես է կոչվում ԱՄՆ-ի մոնոպոլիստական կապիտալի խոշորագույն կազմակերպությունը, որը մոնոպոլիստների ձեռքին մի զենք է կոնգրեսի վրա ճնշում գործադրելու համար։*

*Լոբբիզմը իր մեջ ընդգրկում է ամերիկյան առևտրի պալատը, արդյունաբերողների ազգային ասոցիացիան և այլն։ Այն բոլոր օրենքները, որ ընդունվում են ԱՄՆ-ի կոնգրեսի կողմից, դրանք նախօրոք ենթարկվում են լոբբիզմի ստուգմանն ու հսկողությանը։*

*ԱՄՆ-ում օրենսդրությունը կատարվում է լոբբիզմի ուժեղ ներգործությամբ։ ԱՄՆ-ի գործող բոլոր հակաբանվորական օրենքների հեղինակն այդ կազմակերպությունն է։ Օրինակ, արդյունաբերողների ազգային ասոցիացիան 1945 թվականին մասնակցեց կոնգրեսի այն բոլոր կոմիտեների աշխատանքներին, որոնք քննարկում էին հակադեմոկրատական ուղղություն ունեցող 20 խոշորագույն հարցեր։ Նույն ասոցիացիայի նախաձեռնությամբ 1947 թվականին ընդունվեց տխրահռչակ Տաֆտ-Հարտլի օրենքը։*

*Կոնգրեսի հաշվետվությունների արձանագրությունները ցույց են տալիս, որ ԱՄՆ-ում օրենքի ոչ մի նախագիծ չի քննարկվում առանց առևտրի պալատի և արդյունաբերողների ազգային ասոցիացիայի ներկայացուցիչների ակտիվ մասնակցության։*

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

**Отдел идеологической работы ЦК КП Армении**

АГИТАТОРИ БЛОКНОТ

**№ 16**

**1963**

ՎՖ 10385 *Պատվեր 791* *Տիրաժ 8024*

*Հանձնված է արտադրության 14/VIII 1963 թ.*
*Ստորագրված է տպագրության 21/VIII 1963 թ.։*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը 8 կոպ.։*